## ԱԼՊԱՆԻԱ ԿԸ ԽԼՐՏԻ

Տեղական թերթերը իրազեկ աղբիւրէ մը քաղելով կը պատմեն թէ Փետրուարի ընթացքին մեծ դաւադրութիւն մը երեւան հանուած եւ շատ մը բարձր պաշտօնատարներ մաքրագործուած են Ալպանիոյ մէջ: Դժուար է անշուշտ խնդրին բոլոր ծալքերը երեւան հանել, բայց որոշ է թէ կառավարութիւնը հարկադրուած է ապահովութեան միջոցներ ձեռք առնել:

Թիրանայի բոլոր ռազմագիտական դիրքերը զինուորական գրաւման տակ են, իսկ մայրաքաղաքին Նոր Թաղամասը,—որ յատկացուած է իրաւակարգի առանձնաշնորհեալներուն, ռուս բարձր պաշտօնատարներուն եւ մասնագէտներուն, պահպանուած է հրասայլերով եւ ինքնաշարժ դնդացիրներով :

Միշտ նոյն աղբիւրին համաձայն, Էնվէր Հոճայի եւ իր Ներքին Նախարարին միջեւ հեղհեղէ կը չէշտուի տարակարծութիւնը: 2 կողմէն ալ ձեռնարկած են խուլ, այլ անողոք պայքարի մը :

Մոսկուայի վստահելի մարդը, Ներքին Նախարար Շեհիւ Դաժան քաղաքականութիւն մը կը վարէ: Էնվէր Հօճայի դէմ իր ընդդիմութիւնը, մեծ դժուարութիւններ յառաջ բերած է համայնավար կուսակցութեան ծոցին մէջ, որ չի գիտեր այլեւս թէ որ քարին զարնէ գլուխը:

Էնվէր Հոճայի բարեկամներուն բանիւ եւ գործով մղած պայքարը կը ձգտի ցոյց տալ Մէհմէտ Շահիւն իբրեւ պատասխանատուն բոլոր չարիքներուն: Ներքին Նախարարը, — որ իր երկաթեայ թաթով. ահուսարսափի մատնած է երկիրը, — ամենավառ գոյներով կը ներկայացուի, մինչ Էնվէր Հոճան ցոյց կը տրուի իբրեւ ախոյեանը ժողովրդական ազատութեանց: Պատասխանելով այս յարձակումներուն, Շեհիւ պատնէշ կանգնեց ընդդէմ Էնվէր Հոճայի, որ կը թուի թէ չյաջողեցաւ խորտակել ալպանական կարեւոր թերթերը :

Երկու կողմերն ալ դիմած են Մոսկուայի դեսպանին, իրար ամբաստանելով:

Կ'ըսուի թէ Ալպանիոյ համայնավար կուսակցութեան կնքահայրը՝ Եուկոսլաւիոյ համակիր փոքրամասնութիւնը, կ'աշխատի չարժում ստեղծել ի նպաստ Պելկրատի (Թիթոյականութիւն) :

Դժուար չէ գուշակել թէ Մոսկուա կը քաջալերէ Ալպանիոյ համայնավար կուսակցութիւնը որպէսզի աւելի դաժան ուղղութեան հետեւի: Անոր համար իբրեւ լաւագոյն ճամբայ դիմած են ոստիկանական միջոցներու: Այսպէս, 600 սպաներ եւ զինուորներ, որոնք ձախաւերութիւնը գործած էին խիստ գաղջօրէն արտայայտուելու վարչաձեւի մասին, ղրկուեցան Մալիք լճին շրջակայքը , ուր մեծ աշխատանքներ կը կատարուին: Անոնք զօրացուցին արդէն իսկ ստուար բանակը կասկածելիներուն եւ վարչաձեւի թշնամիներուն, որոնք կը վխտան Մալիքի դժոխքին շուրջ :

---

չէր յաջողած 1909ի տնտեսական յեղափոխութիւնը: Քամպոնի տեսածը աւանդական ղեկավարութեան անհետացումը չէր, այլ անոր մէկ կերպարանափոխութիւնը , որ Անգլիոյ պատմութեան տեւական մէկ երեւոյթն է :

Մեծն Բրիտանիա ժառանգական ղեկավարութիւն չէ ունեցած: Գլխաւոր ազդակը յաջողութիւնն է եւ ոչ թէ ժառանգականութիւնը: Յաջողութիւն ըսելով պէտք է հասկնալ դրամականը : Բայց հարստութիւնը բաւական չէ ղեկավար շրջանակէն ներս մտնելու համար: Հարստութիւնը պէտք է ըլլայ հին, որպէսզի անոր տէրը ժամանակ ունեցած ըլլայ յարմարելու եւ իւրացնելու բուն ազնուականութեան կենցաղը: Թ. Ա. Թ.

## Ծոմապահութեան Օրը

Մեծ Պահքը կը վերջանայ այս շաբթու :

Ֆրանսահայ Կապոյտ Խաչը՝ իր հիմնադրութեան սկիզբէն, բազում պարտականութիւններու շարքին, նշանակած է նաեւ ԾՈՄԻ ՕՐԸ: Ամէն Խաչուհի, նաեւ ամէն հայ կին ու աղջիկ, հայր ու զաւակ՝ յանուն Մեծ Պահքի, յանուն Յարութեան տօնի, իր նուէրը կուտայ Կապոյտ Խաչին, ունեցողն իր ունեցածէն, չունեցողը՝ Աղքատի լումայն որ առաւել է բոլոր գանձերէն: Ու այդպէս, ծոմապահութեան նուէրները հաւաքուելով իր գանձանակին մէջ, Կապոյտ Խաչը Ս. Յարութեան տօնի խթման սեղանին մասնակից կը դարձնէ հիւանդն ու անկարը, կարօտեալն ու աննեցուկ ծերունին: Այդ նուէրները կը դառնան նաեւ իւղ ծըրագալոյցի կանթեղին, գիտութեան լոյսը տալու համար ուսման ծարաւի չքաւոր աշակերտին եւ ուսանողին :

Ո՞ր բարեսիրտ Հայն ու Հայուհին է որ պիտի չփութայ այս տարի ալ ծոմապահութեան իր լուման տրամադրել Կապոյտ Խաչին :

Կատարեցէք ձեր նուիրական պարտքը. պատրաստ եղէք տալու, երբ Խաչուհիներ դիմեն ձեզ: Գտէք Կապոյտ Խաչուհիները, տուէք ինքնաբերաբար, եթէ մոռցեր են զարնել ձեր դուռը :

Տուէք, որ տեւէ հայ ժողովուրդի աւանդական մարդասիրութիւնը , եւ բարգաւաճի , Հայ ազգի աշխարհացրիւ հայութիւնը :

Վստահ ՝թէ պիտի լսուի մեր կոչը, կանխաւ կը յայտնենք մեր շնորհակալութիւնները բոլոր նուիրատուներուն :

Կեդր. Վարչութիւն Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ

## ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԱՆՔ

ԼԻՈՆ.— Ապրիլ 4ին Palais d'Hiverի ընդարձակ սրահը ծայրէ ծայր լեցուած էր: Բազմութեան մէջ կ'երեւային հարիւրաւոր Հայեր Լիոնէն եւ արուարձաններէն: Մարսէյլէն եւ Փարիզէն ալ հայրենակիցներ եկած էին, դիտելու համար Ֆրանսայի ախոյեան Հայրապետեանի մրցումը :

Խաղարկութիւնը երկու հակառակորդներու միջեւ եղաւ շատ կատաղի:

Liberté թերթին մարզական թղթակիցը կ'ըսէ թէ առաջին — երկրորդ — երրորդ եւ եօթներորդ շրջանը (ռաունտ) վերջացաւ ի նպաստ Հայրապետեանի, երեք շրջան եղան հաւասար, իսկ վերջին 3 շրջանը կը մնար Roudeի: Progrèsն վեցերորդ շրջանի արդիւնքն ալ կը վերագրէ Հայրապետեանի: Ուրեմն 5 շրջան ի նպաստ Հայրապետեանի, երեք շրջան հաւասար, երկու հակառակորդին: Հայրապետեանի շահած առաւելութիւնը հաստատուեցաւ տեղական թերթերու կողմէ: Հայրապետեան կռուեցաւ քաջարար եւ արագ : Հակառակ մէկ աչքին վիրաւորուած ըլլալուն , մինչեւ տասներորդ շրջանը շարունակեց ձախ աչքը բոլորովին գոց վիճակի մէջ:

Բայց, Հայրապետեանի հակառակորդը յաղթական համարուեցաւ դատաւորներու կողմէ:

Փարիզի մրցումէն առաջ որ Progrèsէն միշտ աննպաստ արտայայտուած է Հայրապետեանի մասին, ուրբաթ օրուան մրցումին իր թղթակիցն ալ կը խոստովանէր հայ կռփամարտիկին սկզբնական առաւելութիւնը եւ կ'ըսէր թէ արդար էր որ մրցումին վճիռը գոնէ հաւասար ըլլար: Match Nul— որովհետեւ երրորդ, վեցերորդ եւ եօթներորդ շրջաններուն ունեցաւ անվիճելի առաւելութիւն, բայց «ժիւրի»ն տարբեր կը մտածէր, կ'ըսէ:

Ուրեմն հակառակ այս առաւելութիւններուն Roudeը յաղթական հռչակուեցաւ եւ անոր շնորհիւ քանի մը ամիս վերջ կրկին հանդիպում պիտի ունենայ Հայրապետեանի հետ ախոյենութեան համդամանքով: Տեսնելով հայ ախոյեանին առաւելութիւնը, վստահ ենք որ երրորդ մրցումը պիտի վերջանայ իր յաղթանակով :

Իպատիւ Հայրապետեանի Հ .Մ. Ը .Մ.ը որ մարզական միակ կազմակերպութիւնն է որ միշտ կը հետաքրքրուի մարզիկներով, թէյասեղան մը սարքած էր շաբաթ երեկոյ Էթուալի սրահին մէջ: Ներկաները ջերմ ծափերով ողջունեցին հայ կռփամարտիկը: Հ. Մ. Ը .Մ.ի Նախագահը, Պ. Գառնիկ Դաւիթեան քանի մը խօսքով ներբողեց Հայրապետեանի արժանիքները:

Հ. Մ. Ը. Մ.ը այս առթիւ նուէր մը տուաւ կռփամարտիկին, որ շնորհակալութիւն յայտնեց եւ ըսաւ թէ երբեք պիտի չմոռնայ այս երեկոյթը: Ներկաներուն կողմէ եղան երգեր, արտասանութիւններ եւ զանազան մաղթանքներ: Թէյասեղանը վերջացաւ կէս գիշերին : Մ.Տ.Պ.

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՓԱՌԱՏՕՆ ՄԸ.— Ներկայ ամէնէն մեծ արուեստագէտները, երաժիշտները եւ գրողները ժողով մը պիտի գումարեն Փարիզի մէջ այս գարնան, միջազգային փառատօնի մը ընթացքին որ տեղի պիտի ունենայ Մայիսին: Փառատօնը կազմակերպուած է Մշակոյթի Ազատութեան համաժողովին կողմէ, որ համաշխարհային կազմակերպութիւն մըն է գրողներու, փիլիսոփաներու, արուեստագէտներու, եւ գիտնականներու , եւ որոնց պատուոյ նախագահներն են Ժաք Մարիթէն, Պերթրան Րասըլ Պէնէտիթօ Քրօչէ, Քարլ Ժասփեռ, Ճօն Տուէյ, Սալվատօռ տը Մատարիակա: Փառատօնին նպատակն է տալ լայն հայեացք մը ամէնէն արժէքաւոր գործերուն, որ ծնունդ առին այս դարու առաջին կիսուն: Ներկայի սկը պատրաստեն գլխաւոր ցուցադրութիւնները. Ի. դարու նկարչական գլուխ գործոցներուն, բազմաթիւ դասախօսութիւններ թատերական ներկայացումներ, պարեր, նոր օփերաներ , եւն. :

ՆԿԱՐՉՈՒՀԻ ՏԻԿԻՆ ՎԱՎԱ Խաչատուրեան որ առենէ մը ի վեր Պոլիս կը գտնուի տուած է նկարահանդէս մը Մխիթարեան Սանուց սրահին մէջ: Պոլսական թերթերը գնահատելով կը խօսին ցուցահանդէսի մասին:

ՀԱՅՐԵՆԱԿԻՑ, ՏՈՒԱ՞Ծ ԵՍ ՔՈՒ ԼՈՒՄԱՆ ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԾՈՄԱՊԱՀՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ :

---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (45)

# ԼՐՏԵՍՆԵՐՈՒ ՊԱՅՔԱՐԸ

### (ՎԷՊ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԷՆ)

Փօնթիւի, որուն միտքը զբաղած էր անծանօթ տպագրիչի խնդրով, հեռաձայնեց Մարշըլի:

— Մարշըլ, ըսաւ, կը հաճի՞ք անգամ մը աչքէ անցընել Թղթակցութեան վարժարանի աշակերտներուն ցանկը, անոնց մէջ տպագրիչ մը կա՞յ արդեօք :

Կէս ժամ վերջ Մարշըլի պատասխանը հասաւ:

Աշակերտներուն մէջ կը գտնուէին երկու տպագրիչներ եւ երկուքն ալ մաքուր անցեալ ունէին :

Օր. Օրպէթ չկրցաւ նկարագրել իր նշանածին տպագրիչ բարեկամը: Քանի մը վայրկեան միայն տեսած էր զայն, լամբարի տժգոյն լոյսին տակ եւ չէր յիշեր դէմքը: Միայն կը յիշէր թէ միջակ տարիքով մարդ մըն էր :

Առանց մեծ յոյս ունենալու դիմեցինք ամէնէն տրամաբանական միջոցին: Օր. Օրպէթի ցոյց պիտի տային եւ երկու տպագրիչները: Սակայն ոչ մէկ արդիւնք ձեռք ձգեցինք այս կերպով: Մեքենագրուհին չճանչցաւ տպագրիչները :

Ոստիկանական գործը այսպէս է ահա, ըսաւ Փօնթիւի, յուսախաբութիւն յուսախաբութեան վրայ: Նախ կը կարծես թէ լուծած ես գաղտնիքը, յանկարծ ամէն ինչ տակնուվրայ կ'ըլլայ : Մէկը կասկածելի կը թուի քեզի, ամէն զոհողութիւն աչք առնելով կը հետապնդես զայն, եւ յանկարծ կը հաստատես որ ան իր դրացիին կինը համբուրելու յանցանքը գործած է միայն ...

Փօնթիւի հեռաձայնեց Օր. Լօրինկթընի եւ Ճօրճի, որոնք ոչ մէկ նորութիւն հաղորդեցին : Մարշըլի մարդն ալ նոր բան մը չունէր ըսելիք : Լէյսի օրուան մեծ մասը իր սենեակին մէջ կ'անցընէր: Օրերէ ի վեր անծանօթի մը հետ խօսած չէր :

— Անշուշտ մարդու հետ չի խօսիր, ըսաւ Փօնթիւի, որովհետեւ զինքը զգուշացուցած են : Ամէն բանէ տեղեկութիւն ունին այս մարդիկը :

— Գիտէ՞ն նաեւ թէ կը կասկածինք Տիկին Բաշէլէն, Փափա, հարցուցի, եթէ ան ալ գիտեն , ամէն պարագայի մէջ չեն կրնար գիտնալ թէ տեղեակ ենք Մարթէ Ռոլոյի գաղտնիքին :

— Այո, չեն կրնար գիտնալ այդ, պէտք չէ որ գիտնան, որովհետեւ մեր յոյսերը պահուած են այդ երգերուն տակ: Օնօրին աւելի մօտէն պէտք է հսկէ Մարթէի վրայ :

— Թերեւս երգչուհին անմեղ է :

— Այդ ձեր անձնական կարծիքն է: Այս խնդրին մէջ ոչ ոք անմեղ է ինծի համար, մինչեւ որ հակառակը ապացուցանեմ: Շատ սխալ է Անգլիացիներուդ այն կարծիքը թէ «մինչեւ որ իր յանցանքը չապացուցուի, ամէն մարդ անմեղ է»: Այս կերպով ամէն օր հազարաւոր ոճրագործներ կծիկը կը դնեն, ձեր քթին խնդալով :

— Բայց այս Մարթէ Ռոլոն կ'երգէ իրեն տրուած բառերը. ինք ի՞նչ յանցանք ունի :

— Սպասեցէք եւ պիտի տեսնէք: Մեր պաշտօնեաներէն մէկը պիտի հետեւի հեռաձայնային խօսակցութեան: Եթէ Մարթէ անմեղ է, տեսէք թէ օր մը ինչ պիտի պատահի: Պ. Իքս անոր գրել պիտի տայ երեք տուն, Մարթէ յետոյ ինքնիրեն պիտի խորհի «երկրորդ տունը աղուոր չէ, այդ մասը ցատկեմ»: Այսպէս, գաղտնի նշանախօսքը տակնուվրայ պիտի ըլլայ :

Կարծես ապացուցանելու համար ծեր Ֆրանսացիին նախազգացումի զօրութիւնը, յաջորդ գիշերն իսկ Մարթէ, որոշեց չերգել իր երգին վերջին տունը, ըսելով թէ անիմաստ են բառերը:

— Այս գործը պիտի խենդեցնէ զիս, գոչեց Փօնթիւի, լսելով եղելութիւնը: Մտադրած էի ձերբակալել այդ կինը: Բայց գիտենք թէ Հօրլօք, Լէյսի եւ ընկ. հոն չէին երէկ գիշեր: Ուրեմն Պ. Իքս ինչո՞ւ նշանախօսքերով լեցուն երգ մը գրելու ձանձրոյթը յանձն առաւ: Այո, հիմա կը հասկընամ .առանց նշանախօսքի երգեր կը յօրինէ երբ գիտէ թէ լրտեսները բացակայ են: Այս կինը պէտք չէ աչքէ հեռացնել: Գերմաններուն բացակայութեան մէկ տուն պակաս կ'երգէ, տեսնենք նոյնը պիտի ընէ՞ անոնց ներկայութեան :

Յաջորդ առտու Մարշըլ եկաւ: Երիտասարդ համայնավար կուսակցութեան անդամներէն երկու հոգի մարդ մը ձերբակալած էին որ կեղծ պատի ծանուցումները կը փակցնէր փողոցի մը անկիւնը

(Շար.)

ՉԷՔ ԿՐՆԱՐ ՀԱՆԳԻՍՏ ՍՐՏՈՎ ՏՕՆԵԼ ԶԱՏԻԿԸ, ԵԹԷ ՄԱՍՆԱԿՑԱԾ ՉԷՔ ԾՈՄԱՊԱՀՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ :




ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

**HARATCH** Fondé en 1925, R.C.S. 376.286

Directeur : SCH. MISSAKIAN

17, Rue Damesme — PARIS (13e) Métro : TOLBIAC

Վեցամս. 1100 փր., Տար. 2200, Արտ. 3000 փր.

Tél. GOB. 15-70 Գին 10 փր. C.C.P. Paris 1678-63

Vendredi 18 AVRIL 1952 Ուրբաթ 18 ԱՊՐԻԼ

28րդ ՏԱՐԻ – 28e Année No 6741-Նոր շրջան թիւ 2152

Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ԵԹԷ ՄԻԱՅՆ ՈԳԻՆ ԱՌՆԷԻՆՔ

Երէկ երկու հատուածներ արտատպեր էինք Պոլսոյ «Անձնուէր Ընկերութեան» մասին (կազմուած՝ 1860ին)։

Ինչպէս կարդացիք, ընկերութեան անդամները ուխտեր են «ամէն մէկերնին մէկ կողմ երթալով այն տեղին պանդուխտ Հայերուն կարդալ ու գրել ուսցընելու» (սորվեցնել)։

Այս առթիւ, փնտռեր գտեր են նաեւ «ձրի գիրքեր ընծայող անձինք», որպէսզի «ամենեւին ծանրութիւն» չբեռնաւորեն «մեր պանդուխտ եղբայրերուն վրայ»։

Այն օրերու թերթը, «Մեղու», այլապէս շահեկան մանրամասնութիւններ կը հաղորդէ «Անձնուէր»ի գործունէութեան մասին.

— «Այս ընկերութիւնը օր օրի մեծնալու վրայ է. արդէն քսան - երսուն ուսումնական երիտասարդներ ամէն կիրակի խաները, մաքսատունները, նաւամատոյցները եւ ուրիշ տեղեր կը պտտին, ո՛ր տեղ 100, ո՛ր տեղ 50 աշակերտի կարդալ եւ գրել ուսցնելու»։

Գործնական աշխատանքին հետ, ընկերութիւնը բարոյական - հոգեբանական մտահոգութիւն մըն ալ ունեցեր է, ա՛յնքան սրտառուչ եւ օրինակելի։ Փափկանկատութիւն մը, որ կրնայ իբրեւ դաս ծառայել շատ մը ինքնահաւան մեծապատիւներու, նոյնիսկ... ընկերվարական տեսակէտով.

— «Այս ընկերութեան պայմաններէն մէկն է սա. ամէն Հայ ընկեր է, ո՛ր մէկը աշակերտներ կարդացնելով, ո՛ր մէկը առանց գիրք ճարելով, ո՛ր մէկն ալ թէ վարժապետները թէ աշակերտները քաջալերելով եւ կամ զանոնք չծաղրելով ու չյուսահատեցնելով»։

Անշուշտ շատեր պիտի չըմբռնեն վերջին պարբերութեան իմաստը։

Ահա թէ ինչ ըսել կ'ուզեն.

— «Ուստի, ո՛վ որ կը ծաղրէ այն 40 — 50 տարու Հայերը, որ կարդալ ուսնելու սկսած են, 25 — 30 տարու վարժապետի մը առջեւ ծունկ չոքած տեսնելով կամ զանոնք վհատեցնելով թէ այն տարիքնուն ետքը ա՛լ չեն կրնար ուսնիլ՝ այնպիսի անձը թշնամի է Ազգին»։

Ընկերութիւնը հիմնական առաջադրութիւն մը ունեցած է, կարդալ - գրել սորվեցնելով այս «դուրսեցի» աշակերտներուն։

Անոնք «նոր մը ուսցնելու պիտի աշխատին իւրաքանչիւրը իրեն երկրին մէջ»։

Անգամ մը եւս կարդացէք երէկուան եւ այսօրուան հատուածները, եւ ձեր առջեւ պիտի ունենաք ոչ միայն գործնական, այլեւ արդիական ծրագիր մը։

Եթէ միայն «Անձնուէր»ի առաջադրութեանց ոգին առնէինք, ո՛րքան ճամբայ կտրած պիտի ըլլայինք, ի խնդիր սերունդի փրկութեան։

Նորերուն հետ, այսօր ալ կան 40 — 50 տարեկաններ, որոնք նոյնպէս դասընթացքի մը կը կարօտին։ Այստեղ եւ ամէն տեղ։

Բայց մենք ուշադրութիւնը կեդրոնացնենք նորերուն վրայ, որոնք միջազգային ասար են դարձած, Եւրոպայի եւ Ամերիկայի պողոտաներուն վրայ։

Մօտաւորապէս հարիւր տարի առաջ Պոլսոյ մէջ կազմուած «Անձնուէր»ը բան մը չի՞ խօսիր մեր գոյնզգոյն կազմակերպութեանց եւ Միութեանց սրտին։

Այդ ընկերութեան աշխատանքի պայմաններէն մէկն ու մէկը չի՞ կրնար ցնցել մեր դրոց - բրոցներուն եւ բոլոր պիտանի ուժերուն թմրած ջիղերը։

Երէկ «անձնուէրները» ասպարէզ կը նետուէին գդացումով։ «Ի սէր ազգութեան»։ Եւ ո՛վ որ կը համարձակէր ծաղրել կատարուած աշխատանքը, «Ազգի Թշնամի» կը համարուէր։

Կ'ըսեն թէ այսօր շատ աւելի ազգասէր, հայրենասէր ենք։ Աւելի գիտակից եւ հասուն։

Ուրեմն ինչո՞ւ անճրկիլ, տիրաբար եւ արխաբար վարելու համար սերունդի փրկութեան գործը։

Եթէ «անձնուէրներ» կը պակսին, կամաւորներ ժողվենք։

Շ.

## Թանկագին նուէր մը

### Հ. Յ. Դ. ԱՄԵՐԻԿԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Հսկայ մատեան մը որուն նմանը հազուադիւպօրէն կրնանք գտնել հնութեանց մեծ թանգարաններու մէջ, կը հանգչի Կեդր. Կոմիտէի դրասեղանին վրայ, Լիբանանէն Ֆիլատելֆիա բերուած ընկեր Սարհատեանի՝ եւ Ֆիլատելֆիայէն Պոսթըն՝ ընկեր Եղիշէ Մելիքեանի կողմէ։

Մատենաձեւ յուշածրար մը, որ կը բացուի Վարդան Մամիկոնեանի նկարով եւ կը պարունակէ նկարները բազմաթիւ ազգային գործիչներու, եկեղեցական, զինուորական եւ գրական դէմքերու, թիւով աւելի քան երեք հարիւր, — ճոխ եւ բազմապիսի բովանդակութիւն՝ չքեղ պատեանի մը մէջ։

Կողքերը ընկուզենի տախտակէ, եւեւէն իրարու ագուցուած արոյրեայ ծխնիներով, առջեւէն իրարու կը միանան երկու արծաթ փականքներով՝ մէկուն վրայ քանդակուած Հայ Յեղափոխական Դաշնակցութեան Զինանշանը, միւսին վրայ՝ Արարատ լեռը։ Ճակատը, երկայնքին ու լայնքին, կէտկիտեալ կամար մը խորանակերպ, որուն ներսը դեղաքանդակ կ'երեւին Հ. Յ. Դ. տառերը, 1890—1950 թուականները եւ կուսակցութեան զինանշանը։ Ճակատի կողքին ետեւ հետեւեալ արձանագրութիւնը՝ մետաղեայ տախտակի մը վրայ.—

Նուէր՝ Վարդան Շահպազի.— Գործ՝ Յ. Այվազեանի.— Նկար՝ Տիրան Անեմեանի.— Քանդակ՝ Ն. Նոխուտեանի.— Լուսանկարիչ՝ Պետօ. — Մետաղեայ մասեր՝ Զարեհ Սարեան։

Ուրեմն խումբ մը ընկերներ, կանխամտածեալ ծրագրով, իւրաքանչիւրն իր մասնագիտութեամբ, տքնած են առանձնաբար եւ ապա համադրած իրենց ջանքերուն արդիւնքը գործի մը մէջ՝ արտաքուստ ճաշակաւոր եւ գեղագիտական, ներքուստ՝ ճոխ, այլազան եւ հրապուրիչ։

Այս գործն է ահա, զոր ընկեր Վարդան Շահպազ, փաստաբան եւ ծերունազարդ վեթերանը, կը ձօնէ Կեդր. Կոմիտէին, կուսակցութեան վաթսունամեակին առթիւ։

Եւ Կեդր. Կոմիտէս երախտագիտութեամբ կ'ընդունի այս չքնաղ նուէրը, զոր պիտի պահէ գուրգուրանքով, եւ իր ջերմ շնորհակալութիւնները կը յայտնէ ալեհեր նուիրատուին եւ անոր գործակիցներուն։

Հ. Յ. Դ. ԱՄԵՐԻԿԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷ

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

**ԵԳԻՊՏՈՍԻ** վարչապետին արտակարգ ներկայացուցիչը, նախկին դեսպան Ամր փաշա, Պ. Իտընի յանձնելով անոր մասնաւոր նամակը, 70 վայրկեանի տեսակցութիւն մը ունեցաւ։ Կը հաւաստեն թէ Ամր փաշա բացէ ի բաց պարզած է Եգիպտոսի տեսակէտները Սուտանի եւ ուրիշ խնդիրներու մասին։ Սուտանի ընկերվարական հանրապետական կուսակցութիւնը եւ ուրիշ հոսանքներ յայտարարեցին թէ ինքնավարութիւն կը պահանջեն այս տարուան ընթացքին, եւ չեն հանդուրժեր որ խնդիրը նորէն ձգձգուի Անգլիոյ կամ Եգիպտոսի կողմէ։

**ԱԼՊԱՆԻՈՅ** համայնավար կուսակցութեան անդամներէն 5996 հոգի «մաքրագործուած են», վերջերս, իբրեւ «անվստահելի», ինչպէս հաստատեց դիկտատորը, Էնվէր Հօճա, ճառ մըխօսելով Մարտ 31ին։ (Ճառը հրատարակուած է Կոմինֆորմի պաշտօնաթերթին մէջ)։

**ՈՍԿԻՆ ԲԱՐՁՐԱՑԱՒ** առջի օր, Փարիզի հրապարակին վրայ 509.000 ֆրանքէն հասնելով 518.000ի Տոլարը ազատ շուկային մէջ կ'արժէր 408 (Գչ. 399). սթերլինը՝ 990ի (985) եւն.։

**ԶԱՏԿԻ** տօներուն առթիւ արկածներէ մեռած են 55, վիրաւորուած՝ 154 հոգի։

**ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ** մամուլի վերատեսուչը, Ռումլէր, Պերլինի արեւմտեան շրջանը ապաստանեցաւ, բազմաթիւ փաստաթուղթեր ալ փախցնելով։

**ՃԱՓՈՆԻ** դաշնագիրը ստորագրուեցաւ նախագահ Թրումընի կողմէ։ Գործադրելի է ապրիլ 28էն սկսեալ։

## Ի՞նչպէս պիտի գործադրուի հարկային ներումը

Երէկ մանրամասնութիւններ հաղորդած էինք ելմտական օրէնքի զանազան տրամադրութեանց մասին։

Պաշտօնաթերթը Ապրիլ 17ին շրջաբերական մը հրատարակեց հարկախոյսներու համար հաստատուած ընդհ. ներման մասին։ Մեր հայրենակիցներու մասնաւոր ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը.—

1.— Ընդհ. ներումէն բոլորովին դուրս պիտի ձգուին այն հարկախոյսները որոնք երեւան հանուած են օրէնքին հրատարակութեան ատեն (14 ապրիլ)։

2.— Օրէնքը պատիժներէ ազատ կը կացուցանէ այն հարկատուները որոնք որեւէ յայտարարութիւն չեն յանձնած, բայց կը պարտադրէ վճարել պարզ տուրքերը, նկատելով որ անոնք խուսափած են իրենց տարրական պարտաւորութիւններէն եւ նոր պայմանաժամ մը կը շնորհէ, օրինական յայտարարութիւնները յանձնելու համար։

Այս երկու դասակարգերէն դուրս, միւս բոլոր հարկատուները վերջնապէս պիտի համարուին կանոնաւոր։ Այն օրինազանց հարկատուները որոնք անճիշդ յայտարարութիւններ յանձնած են 1952 Յունուար 1էն սկսեալ եւ դատական հետապնդումներու չեն ենթարկուած, տասնըհինգ օր պայմանաժամ պիտի ունենան, Ապրիլ 14էն սկըսեալ, անհրաժեշտ ճշդումները կատարելու համար իրենց յայտարարութեանց մէջ, առանց պատիժներ կրելու։ Ամէն պարագայի մէջ, վերջին ժամկէտը (պայմանաժամ) պիտի երկարաձգուի մինչեւ 5 Մայիս։

Ան որ իր դրամագլուխը պահած է տուրքէն վախնալով, պարտաւոր է յետագային ապացուցանել թէ այդ գումարները իրապէս ունէր ընդհ. ներման միջոցին։ Իր յայտարարութիւնը ստուգուած ատեն, պէտք է ապացուցանէ թէ հարստացումը տեղի ունեցած է ընդհ. ներումէն առաջ։ Այն հարկատուները որոնք արդէն իրենց անհատական գործերուն մէջ շահարկած են կամ կ'ուզեն շահարկել իրենց դրամագլուխները, պարզապէս պիտի սրբագրեն իրենց հաշուապահութիւնը, ցուցնելու համար իրական մթերքը կամ դանձը։

Շրջաբերականը մասնաւորապէս կը յանձնարարէ նախկին հարկախոյսներուն չսպասել մինչեւ 1952 Յուլիս 1, յարգելու համար օրէնքին տրամադրութիւնները։

× Վարչապետը, որ Միջերկրականի ափերը գացած էր հանգստանալու համար, յանձնարարեց նահանգապետներուն եւ ազգ. տնտեսութեան ընդհ. քննիչներուն «մատնանշել մսխումները, ծայրայեղ աշխատանքները, հսկել հիւանդանոցներու գիներուն վրայ (հաշիւ եղած է որ հիւանդութեան առթիւ ընկերային ապահովութեան սնտուկէն վճարուած գումարը 45 միլիառէն (1950) 50 միլիառի բարձրացած է 1951ին)։

Վարչապետը կը հրաւիրէ նաեւ միջոցներ ձեռք առնել, գիները իջեցնելու համար, ի հարկին ստուգումներ կատարելով։ «Միեւնոյն ատեն պէտք է զգուշանալ աշխատավարձքի յաւելումներէ, զանոնք կապելով գիներու բարձրացման հետ։ Աշխատավարձքի յաւելումը իրական արժէք ունի երբ գիները հաստատուած վիճակի մը հասած են»։

× Եւրոպայի Վճարումներու Միութեան մէջ Ֆրանսայի պարտքը մարտին իջած էր 29.500.000 տոլարի, շնորհիւ ներածումներու կրճատման։ Փետրուարին 129.800.000 տոլար էր։

## Ամերիկան ալ պիտի օգնէ

Ինչպէս գրած էինք երէկ, Անգլիա խոստացած է փոխադարձ պաշտպանութեան դաշինքներ կնքել Եւրոպայի վեց զինակից երկիրներուն հետ, որպէսզի չխախտի միացեալ ճակատը

Մ. Նահանգներու արտաքին նախարարը, Պ. Էչիսըն, լրագրական ասուլիսի մը առթիւ յայտարարեց թէ Ամերիկա պատրաստ է Հիւս. Ատլանտեանի դաշինքին պարունակած երաշխիքները տարածելու Եւրոպայի պաշտպ. ճակատի բոլոր անդամներուն վրայ, երբ պատրաստ ըլլայ եւրոպական բանակը եւ ստորագրուի առժամեայ պայմանագիրը Գերմանիոյ հետ։

Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, այս խոստումը կը նշանակէ ՀԱԿի (Հիւս. Ատլանտեանի Կազմ.) բոլոր առաւելութիւնները տրամադրել Գերմանիոյ, թէեւ այդ երկիրը պաշտօնապէս անդամ պիտի չըլլայ եւ ուղղակի ձայն պիտի չունենայ կազմակերպութեան գերագոյն խորհուրդներուն մէջ։

ՀԱԿի դաշինքին համաձայն, իւրաքանչիւր անդամ իր յարմար դատած օգնութիւնը պիտի տրամադրէ ուրիշ ոեւէ անդամի, երբ ան յարձա-

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

# Երկու դագաղներ

ԼԻՈՆ.— Տասնըհինգ օրուան մէջ երկու դագաղներ փոսը իջեցուցինք... Երկու շատ սիրելի կորուստներ, որոնց բացակայութիւնը պիտի ողբանք երկար ատեն։ Առաջինը՝ դերասան Հայկասար, որ աւա՛ղ, քիչ ապրեցաւ մեզի հետ, բայց շատ գգալի յիշատակներ թողուց մեզի։ Իբրեւ դերասան իր ներկայացուցած բազմաթիւ գործերուն մէջ «Սամուէլ»ը եւ «Խենդը» (երկուքն ալ Րաֆֆիէն) պիտի մնան միշտ բացառիկ, իբրեւ արուեստ եւ թէ իբրեւ խղճամիտ աշխատանք։ Եւ մեր գաղութը գիտցաւ ջերմօրէն գնահատել։

Յետ պատերազմեան կարգ մը «չերչի» դերասաններու այլանդակութիւններու մօտ անոր ազդասիրական,— հայկական — գործերը նոր բոյր եւ նոր կենդանութիւն բերին հայկ. բեմին։ «Խենդը», որ բացառիկ յաջողութիւն ունեցաւ լման երկու տարի, միտք չարչարած էր — իր բառերով — պէտք եղածին պէս մեզի հրամցնելու համար։ Ու մենք, իր մահուընէն վերջ՝ իր թարմ հողակոյտին առջեւ, առանց վերապահութեան կրնանք վկայել թէ իր յոյսերը, եւ աշխատանքը լիովին վարձատրուեցան։ Վկայ՝ այն խանդավառ թըղթակցութիւնները որ լոյս տեսան այդ ներկայացումէն վերջ։

Շատ մեծ եռանդով լծուած էր «Սասունցի Դաւիթ» բեմադրութեան, զոր, աւաղ, իր անսպասելի մահը եկաւ ընդհատելու։ Մինչեւ իր վերջին շունչը խօսեցաւ հայկ. բեմի մասին, իր ծրագիրներու, իր «Սասունցի»ին մասին։ Իր ցանկութիւնն էր մեռնիլ բեմի վրայ, պատնէշին վրայ։ Եւ այդպէս ալ եղաւ։ Իր բարձին տակէն գտանք թատերական կտորներ, իր ապագայ ծրագիրները

Իր կենսագրականի մասին շատ քիչ բան գիտենք։ Գիտենք միայն որ, ծնած էր Կարս, եղած է որբ, ապրած է Հայաստանի որբանոցները ու հոն ալ հետեւած է դերասանական դպրոցին։ Իր ծանօթները կը վկայեն որ, Լենինականի, Ալլավերտիի, Ղարաքիլիսէի եւ Բերիայի բեմերուն զարդը եղած է։

Գիտենք նոյնպէս որ Հայկասարը մէկն էր այն 300.000 հայորդիներէն, որոնք մասնակցեցան «Հայրենական մեծ պատերազմի», որոնց մեծ մասին ճակատագիրը անորոշ կը մնայ...

Ապրիլ 1ին, ձիւն ու անձրեւոտ օր մը, գայն ցուրտ փոսը իջեցուցինք։ Սգակիրներու կոկիկ բազմութիւն մը՝ եռագոյնով ծածկուած դագաղին ետեւէն հետեւեցաւ մինչեւ գերեզմանատունը։ բազմաթիւ ծաղկեպսակներու կարգին՝ յիշենք Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէինը, «Նոր Սերունդ»ինը, Կապոյտ Խաչինը, Հայ Ազատամարտիկներու նորակազմ միութեանը եւն.։ Երկու քահանաներ կատարեցին կրօնական արարողութիւնը։ Դամբանականներ խօսեցան, ընկ. Թ. Այվազեան (Հ. Յ. Դ.), Պ. Բագրատ (Հայ Ազատամարտիկներ), եւ պատուելին, եւն.։

Վերջին անգամ երբ իրեն այցելեցինք, կարծես վախճանը նախզգալով, հանդարտօրէն պատասխանեց մեր «մխիթարական» խօսքերուն.— «Գիտեմ, պիտի մեռնիմ, բայց, հաւատացէք, աչքերս գոհունակութեամբ պիտի փակեմ, վասն զի վստահ եմ, ձեզ նման ծանօթ բարեկամները կտոր մը սրբազան եռագոյն եւ պարզ խաչ մը պիտի դնեն դագաղիս վրայ... Ես չեմ ուզեր թաղուիլ իբրեւ անհաւատ»։

Իր ուխտը եւ ցանկութիւնը կատարուեցաւ։ Հանգիստ իր չարչարուած ոսկորներուն։

╳ Երկրորդը՝ մեր սիրելի Աւետիսին դագաղն էր (Սիմոնեան)։ Բժիշկի մը նշդրակի հարուածը եկաւ վերջ դնել իր կեանքին։ Ընկ. Աւետիս 35 տարուան հաւատաւոր Դաշնակցական մըն էր։Ծնած Խարբերդի Հիւսէյնիկ գիւղը։ Մանուկ օրերէն սնած ընկեր Կարօներու, Նահիկեաններու շունչովը, կեանքին մինչեւ վերջը մնաց պատնէշին վրայ իբրեւ հաւատաւոր եւ եռանդուն Դաշնակցական։

Ընտանիքի պատուական հայր, նաեւ պատուական Հայ՝ միշտ աշխատեցաւ այդ ուղղութեամբ։ Կը բնակէր հեռաւոր արուարձան մը, բայց, ատիկա պատճառ մը չէր որ ժողովներէ եւ ձեռնարկներէ թերանար։

Մեր խնջոյքներուն եւ դաշտահանդէսներուն զարդն էր։ Ուր Աւետիս կար՝ հոն ցուարթութիւն կար։ Վերջերս պեխ մը ձգած էր։ Հետը խնդալու համար կ'ըսէինք.— Այդ կատուի պոչը ի՞նչ փակցուցած ես քթիդ տակ»։ = «Որպէսզի խօսքս «փարա ընէ», կ'ըսէր ծիծաղելով։

Շաբաթ, 12 ապրիլին անոր դագաղն ալ հողին յանձնեցինք։ Նոյն արարողութիւնները, նոյն ծաղկեպսակները, նոյն գերեզմանոցը։ Եւ, Հայկասար ու Աւետիս, քով քովի հողին տակ։ Սիրելի Աւետիսին կորուստով Հ. Յ. Դաշնակցութիւնը անձնուէր զինուոր մը կորսնցուց։

«Վարանդեան» կոմիտէն ցաւօրէն կ'ողբայ իր ընկերոջ կորուստը։ «Մխիթարութիւն» չենք ըսեր իր հարազատներուն, քանզի մենք,— իր ընկերները մխիթարուելու պէտք ունինք։

ՄԻՍԱՔ ՄԻՐՋԷ

---

ղաքական եւ ռազմական հոգերով, գործելու արտօնութիւն միայն կը խնդրէ։ Դրամ չի պահանջեր, խանդավառօրէն կը լծուի իր ծրագրի գործադրութեան, ամենայետին մանրամասնութեամբ։

Ամբակառոյց հիմ մը ապահովելու համար, Լէոնարտօ կ'ուսումնասիրէ հողին տոկունութիւնը, չինանիւթերուն դիմադրականութիւնը, մանաւանդ աղեղին աջակցութեան ուժը։Ըստ իր ըմբռնումին, աղեղին երկու կողմերը տկար են, բայց միացած ուժ մը կը կազմեն։ Քաղաքաշինութեան իր նօթերը,— որոնք մինչեւ այսօր կը պահուին, —ցուցմունքներ կ'ընեն սանդուղներու շինութեան շինանիւթերու ընտրութեան, ջուրերու լճացումէն եւ հրդեհէն խուսափման, պարտէզներու ջրման եղանակի մասին։

Հանճարեղ մարդուն յատակագիծներն ալ կը մնան մինչեւ այսօր, բայց առանց իր նօթերուն, տարտամ գաղափար մը միայն պիտի կազմէինք փողոցներու, շէնքերու եւ հանրային սպասարկութեանց ձեւին, դիրքին, ազատ միջոցի մասին։

Լէոնարտօ ցած փողոցները կը վերապահէ վաճառանոցներուն, ապրանքներու մթերանոցներու, ձիերու եւ սայլերու շրջագայութեան, իսկ վերի փողոցները պերճանքի բարձր առեւտուրին, ինչպէս գոհարներու,զարդեղէններու, հագուստի, անուշահոտութեանց եւ քաղաքացիներու պտոյտին։

Միջին դարու այս հանճարը, ոչ միայն նախակարապետը եղած է օդանաւերու, սուզանաւերու եւ Hélicoptèreի գիւտին, այլ շարժուն տուներու յղացման։

Ուրիշ յօդուածով մը կը ներկայացնենք նկարիչը իր ստեղծագործութեամբ։

UN.

---

ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

## Ո՞ՒՐ Կ'ԵՐԹԱՆՔ

ՎԱԼԱՆՍ, (Յառաջ).— Աւելի քան երեք ամիս սպասելէ վերջ, ցաւ ի սիրտ հրապարակաւ պիտի պարզենք մեր գաղութին տխուր պատկերը։

«Յառաջ»ի ընթերցողներուն ծանօթ է որ Վալանսի հայ գաղութը 27 տարուան կեանք մը ունի զոյնզգոյն կազմակերպութիւններով։ Այդ անցնող տարիներու ընթացքին, հակառակ կուսակցական զանազան վէճերու, միշտ ալ հասկացողութեան կուգային։

Արդ, կարելի չեղաւ 1952ի համար Ազգ. Միութիւն մը կազմել առանց վէճի։ «Ծակատակական»ներու կազմալուծումէն ի վեր, կուսակցական պայքարը դադրած էր։ 1949էն ի վեր մութին մէջ գործողները երբեւս չունեցան հրապարակ գալու։

Ուրեմն փոխադարձ համաձայնութեամբ Դաշնակցութիւնը կուտար երեք ներկայացուցիչ, ռամկավարները 2, հնչակեանները մէկ։ Երեք հոգի ալ բացարձակապէս չէզոք։ Ոչ մէկ դժգոհութիւն կամ բողոք։

Այս սիրալիր եւ համերաշխ ոգին խառնակիչներուն քունը խանգարած էր, անոնց համար ատելը, կեղծելը, զրպարտելը եւ որեւէ ազգային շարժում խանգարելը «հայրենասիրութիւն» եւ «յառաջդիմութիւն» է։

Անոնք դժբախտաբար մեր անկեղծութենէն քաջալերուած ուզեցին իրենք ալ ներկայացուցիչ մը ունենալ։ Այսպէս Յունուար 18ին, նախորդ Ազգ. Միութիւնը ընդհ. ժողովի հրաւիրած էր գաղութը։ Հրաւէրին պատասխանած էին 36 հոգի։ Ժողովը լսելով տրուած զեկուցումը, անմիջապէս կազմեց ընտրողական մարմին մը, ներկայանալով ծանօթ հայրենակիցներու, անոնց հաւանութիւնը պիտի առնէր եւ պիտի լրացնէր կազմը։ Այս անգամ ալ մի ոմն Քէթէնճեան մէջտեղ նետուած էր, ամէն բան խանգարելու համար։

Փետրուար 24ին ընտրողական մարմինը ժողովի կը հրաւիրէ եւ զեկուցումէն երեւան կուգայ որ քայլ մը յառաջ գացած չեն։

Կարծիքներու փոխանակումէ վերջ, ընդհ. ժողովէն նշանակուեցան երեք չէզոք հայրենակիցներ։ Հ. Յ. Դաշնակցութիւնը որ միշտ իր թիւի համեմատ երեք ներկայացուցիչ կուտար, յանուն համերաշխութեան յայտարարեց.— Մենք թիւի առաւելութիւն չենք ուզեր, իւրաքանչիւր քաղաքական կազմակերպութիւն թող մէկ մէկ ներկայացուցիչ տայ։ Ուրեմն վեց հոգի արդէն ընտրուած եղան։ Ոչ մէկ դիտողութիւն։ Դաշնակցութիւնը երեքի փոխարէն մէկով գոհացաւ, բայց քանի մը օր վերջ ռամկավարները կը պատասխանեն թէ «մենք ներկայացուցիչ չունինք, բայց կը խոստանանք քաջալերել»։ (Գրաւոր)։ Ընտրուած վեցերը որ երեք հոգի պիտի առնէին, իրենց հետ այսօր հինգի իջած են։ Եւ վերջին պահուն կ'իմանանք թէ երեք չէզոքներն ալ կը հրաժարին։

Ուրեմն, եթէ այսպէս շարունակուի 2500նոց գաղութ մը պիտի կազմալուծուի, մանաւանդ որ նոր եկեղեցին աւարտելու վրայ է։ Այս պարագան հրապարակաւ կր յիշեցնենք.— Եթէ կ'ըմբռնէք ապագայ դժուարութիւնները, գործի լծուեցէք։ Այս անտարբերութիւնը կրնայ թիւրիմացութեանց մատնել տեղական իշխանութիւնը, որուն ջերմ հոգածութիւնը կը վայելէինք։

Հ. Յ. Դաշնակցութիւնը, ինչպէս միշտ, այսօր ալ գիտակից իր պարտականութեան, չի կրնար անտարբեր մնալ։ Կը հրաւիրենք բոլոր սրտցաւ Հայերը որ հրապարակ իջնեն։ Մենք պատրաստ ենք ամէն դիւրութիւն ընծայելու, կը բաւէ որ անկեղծ Հայեր պարտականութեան լծուին։ Մեզի համար դաւոնիք չէ թէ քանի հոգի չեն կրնար մասնակցիլ որեւէ ազգային պատասխանատու գործի։

Մենք լաւ Հայեր կը պահանջենք, հարուստ ըլլայ թէ աղքատ։ Մեր գաղութը շատեր ունի, որոնք թէ Հայերուս եւ թէ տեղական իշխանութեան վստահութիւնը կը վայելեն...

╳ Կիրակի օր Վալանսի Հայ Մարզականը իր ախոյենական մրցումը կատարեց ընդդէմ Վալանսի տեղական խումբին, մերինները ջախջախիչ յաղթանակ մը տարին 5—1։ Կրտսերները (cadet) նոյնպէս 5 — 2։

ՆԱԹՍ.

---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (52)

# ԼՐՏԵՍՆԵՐՈՒ ՊԱՅՔԱՐԸ

(ՎԷՊ ՎԵՐՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԷՆ)

— Ուրեմն ուրիշ թել մը կապուած է գործիքին. կրնա՞ք գտնել այդ թելը։

— Այո, սակայն թերեւս ատոր համար պէտք պիտի ըլլայ ամբողջ պանդոկը իրար անցընել։

— Այս պահուս այդքան առաջ երթալու պէտք չկայ։

— Այս գործը կատարուած է մէկու մը կողմէ, որ երկար ատենէ ի վեր այս պանդոկը կը գտնուի։

— Ուրեմն պէտք է որ քննութիւն կատարենք եւ ստուգենք թէ ո՞ր պաշտօնեաները հինէն ի վեր հոս կ'աշխատին, ըսաւ Մարշըլ։

Մաքֆարլէյնի մեկնումէն ետք երեքս հաւաքուեցանք վառարանին շուրջ։ Մարշըլ եւ ես դեռ կը վիճաբանէինք պանդոկին պաշտօնեաներուն եւ հին յաճախորդներուն շուրջ։ Կրնայինք ցանկ մը ստանալ Միլըրէն։ Փօնթիւի մեզ մտիկ չէր ըներ։ Միայն անգամ մը ոտքի ելաւ, առաւ յանդաւոր բառարանը եւ սկսաւ դայն աչքէ անցընել։

Ցանկարծ կեցաւ սենեակին մէջտեղը, ձեռքը վեր բարձրացուց եւ պոռաց հանդիսաւոր շեշտով մը.

— Կեցէք, խնդիրը լուծուած է։

Մարշըլ եւ ես զարմացած Փօնթիւին կը դիտէինք։ Ֆրանսացին ժամ մը առաջ կը յայտարարէր թէ անելի մը մէջ մտած է, իսկ հիմա կ'ուրախանար եւ լուծեալ կը նկատէր խնդիրը։

— Հիմա գիտեմ թէ ով է մարդը, շարունակեց, այլեւս ինծի ծանօթ չէ Հէր Իքսի ինքնութիւնը։

= Ո՞վ։

Գլանիկ մը հանեց գրպանէն եւ սկսաւ դանդաղօրէն բերանը տանիլ զայն։ Հաճոյք կը զգար մեզ սպասցնելով։

— Անշուշտ ուշադրութիւն ըրած էք թէ բոլոր լրտեսական եւ ոստիկանական պատմութիւններուն մէջ բուն յանցաւորը միշտ յայտնի կ'ըլլայ.ան յաճախ արտասովոր դէմք մըն է. ձեր միակ գործը պիտի ըլլայ փնտռել այն անձը որ ամէնէն տարօրինակ անունը կը կրէ։

«Դուք Անգլիացիներդ շատ կը վախնաք որ անունի մը նմանութեան հետեւանքով մէկը կ'ելլէ եւ դատ կը բանայ,հետեւաբար ձեր յանցաւոր հերոսին կուտաք սարսափելի անուններ։ Անգլիական գրքի մը մէջ եթէ հանդիպիմ, օրինակ, Պ. Փամփիտինք անունով մարդու մը, առանց գիրքը կարդալու կրնամ ըսել թէ հերոսը ան է։ Իսկ իրականութեան մէջ ճիշդ հակառակը կը պատահի։

Սկսանք անհամբերութեան նշաններ ցոյց տալ. Փօնթիւի նիւթէն շեղած էր եւ սկսած էր ճառախօսել։

— Մարդը ո՞վ է, Փափա. ըսէք մեզի, գոչեցի։

— Ահ, այո, մարդը։ Այս խնդիրը շատ մը փուլերէ անցաւ։ Հիմա պիտի փնտռենք թէ մեր շուրջը գտնուողներուն մէջէն ո՞վ է. որ ամէնէն քիչ կասկած հրաւիրած իր վրայ։

(Տար.)

